աքսորական կեանքի մէջ:

Ոստիկանական վերջին քննութիւնները կը հաստատեն թէ տանը մէջ ոչ պոմպա գտնուած է, ոչ ալ որ եւ է զէնք, այլ միայն քանի մը... պատառաքաղ եւ հացի դմելի մը:

## 800 ձերբակալութիւն Մարսէյլի մէջ

Մարսէյլի ոստիկանութիւնը ուրբաթ գիշեր ընդհանուր «աւլում» մը կատարեց, շղթաներ կազմելով արուարձաններու մէջ: Այս գործողութեան հետեւանքով ձերբակալուեցան 800 հոգի եւ առաջնորդուեցան Ապահովութեան Տեսչութեան պաշտօնատունը, հարցաքննուելու համար: Քառասուն հոգի վար դրուեցան, արտաքսման վճիռ ստացած կամ զէնք ունեցած ըլլալով: Այս առթիւ բռնուեցան կարգ մը չարագործներ որոնք կը փնտռուէին երկար ատենէ ի վեր:

*** Փարիզի մէջ ալ հետապնդումներ կատարուելով, բազմաթիւ կասկածելիներ ձերբակալուեցան:

## Փարիզի միջազգային ցուցահանդէսին տոմսը

Թղթատարական նախարարութիւնը որոշեց նամականիշ մը հանել, 1.50 ֆրանք արժէքով:

*** Համաձայնութիւն մը գոյացաւ Գերմանիոյ հետ, գերման զբօսաշրջիկներու այցելութեան առթիւ: Օտար դրամի խնդիրը լուրջ դժուարութիւններ կը ներկայացնէ Գերմանիոյ համար, այնպէս որ մեծ արժէք ունի այս համաձայնութիւնը: Կը կարծուի թէ 40 — 50,000 Գերմանացիներ պիտի գան Փարիզ, ինչ որ շատ փոքր է Գերմանիոյ համար, քանի որ Զուիցերիա 200,000 հոգի պիտի ղրկէ:

*** Շինութեանց բանուորները յանձն առին շաբաթ եւ կիրակի օրերն ալ աշխատիլ, որպէսզի կարելի ըլլայ մինչեւ մայիս հասցնել ցուցահանդէսը:

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՔՐԷՕԶՈՅԻ ՇՆԱՅՏԷՐ ԶԻՆԱԳՈՐԾԱՐԱՆԻՆ ազգայնացման հրամանագիրը երէկ հրատարակուեցաւ պաշտօնաթերթին մէջ: Ասով կ'իրականանայ Ժողովրդական Ճակատի կառավարութեան հիմնական ծրագիրներէն մէկն ալ:

ԳԻՆԵՐՈՒ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ դէմ պատրաստուած օրինագիծը քուէարկուեցաւ երեսփ. ժողովին մէջ, 197ի դէմ 391 ձայնով:

ՄՈՒՍՈԼԻՆԻ մարտ 12ին հանդիսաւորապէս կատարեց Լիբիոյ մեծ խճուղիին բացումը, Թրիպոլիի մէջ: Այս ճամբան ունի 1500 մղոն երկայնութիւն եւ կ'երկարի Թունուզէն մինչեւ Եգիպտոս:

ՀԱԿԱԲՈԼՇԵՒԻԿ ՀԱՄԱԳՈՒՄԱՐ մը տեղի պիտի ունենայ Պերլինի մէջ, մայիս 1ին, մասնակցութեամբ 30 ազգերու: Պաշտօնապէս պիտի մասնակցին Գերմանիա, Իտալիա, Ճափոն եւ Հունգարիա:

ԳՈՐԾԱԴՈՒԼՆԵՐԸ իրարու կը յաջորդեն Մ. Նահանգներուն մէջ: Միայն Տիթրոյթի մէջ 80,000 բանուորներ գործադուլ հռչակած են:

ՔՍԱՆ ՌՈՒՄԲԵՐ, որոնք չինուած էին նոր դրութեամբ, անհետացած են Պոստոյի շրջանին մէջ: Կը կարծուի թէ լրտեսական գուսադրութիւն մը կատարուած է:

ԱՇԽ. ԸՆԿԵՐՎ. ՄԻՋԱԶԳԱՅԻՆԸ եւ Արհեստակցական Միութեանց Դաշնակցութիւնը վերջացնելով իրենց համագումարը՝ Լոնտոնի մէջ, բանաձեւ մը քուէարկեցին որ կ'ամբաստանէ Գերմանիան եւ Իտալիան, իբրեւ կազմակերպիչները Սպանիոյ ապստամբութեան եւ Ազգաժողովին միջամտութիւնը կը խնդրէ:

Ս. ՄԱՐԿՈՍԻ ՀՐԱՊԱՐԱԿԸ ողողուեցաւ առջի օր, մակընթացութեան մը հետեւանքով որ տեսնուած չէր Վենետիկի մէջ, 1900էն ի վեր: Երթեւեկը դադրեցաւ:



ՂԱՐԱԲԱՂ - ԶԱՆԳԵԶՈՒՐ հայրենակցական միութեան հերթական ընդհանուր ժողովը տեղի կ'ունենայ նախագահութեամբ Պ. Աբրահամ Ղուկասեանի եւ փոխ նախագահ Տքթ. Մելիքի, 18 մարտ, հինգշաբթի երեկոյ ժամը 9ին, 81, Rue de la Faisanderie, Paris (16), մէթրօ Dauphine կամ Pompe. Օրակարգ՝ զեկոյց մշակուած կանոնագրի մասին, պարահանդէսի կազմակերպութիւն եւ ընթացիկ հարցեր: Կը հրաւիրուին բոլոր Ղարաբաղ-Զանգեզուրցիները այս խիստ կարեւոր ժողովին:

Ֆ. Կ. ԽԱՉԻ Մարսէյլի մասնաճիւղս շնորհակալութեամբ ստացած է (50 յիսուն) ֆրանք, Տէր եւ Տիկին Զըլճեանէ, փոխան ծաղկեպսակի, Փոքրիկն Վիգէն Սէրէնկիւլեանի կսկծալի մահուան առթիւ:



Le Gérant: H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Damesme, PARIS (13)

## 4000 Համայնավարներ Պաղեստինի մէջ

Պաղեստինի ոստիկանութիւնը հրամայեց ձերբակալել բոլոր համայնավար գործիչները: Այս առթիւ կը տեղեկացնեն թէ 4000 հրեայ եւ արաբ համայնավարներ կը գտնուին Պաղեստինի մէջ: Արաբները համայնավարներու կը վերագրեն վերջին յարձակումները:

*** Գրած էինք թէ երեք ռումբեր պայթեցան Երուսաղէմի մէջ, վիրաւորելով 25 Հրեաներ: Այս դէպքին հետեւանքով, բացառիկ վիճակ հրատարակուեցաւ քաղաքին մէջ, ժամը 7էն մինչեւ 9: Արաբական Գերագոյն Խորհուրդը յայտարարութիւն մը ուղղեց Արաբներուն, յորդորելով որ համբերեն, մինչեւ արքայական յանձնաժողովին որոշումը: Յայտարարութիւնը կ'ըսէ թէ այս խռովութիւնները կը վնասեն արաբական շահերուն:

## Օրէնք պանդոկի գիներու մասին

Նկատելով որ պանդոկներու, այլազան հիւրանոցներու եւ կահաւորուած սենեակներու գիները կրնան չափազանց բարձրանալ, յառաջիկայ ցուցահանդէսին առթիւ, Երեսփ. Ժողովը օրէնք մը քուէարկեց անցեալ օր: Այս օրէնքին համաձայն, բոլոր պանդոկապետները պարտաւոր են ոստիկանութեան տոմարներուն մէջ արձանագրել այն գիները զոր կ'ուզեն գանձել, մայիս 1էն մինչեւ հոկտեմբեր 30: Այս գիները պիտի կախուին բոլոր վարձու հաստատութեանց դռներուն վրայ եւ սենեակներուն մէջ: Օրէնքը քուէարկուեցաւ 259ի դէմ 334 ձայնով:

## Կիներու ազատութիւնը Ալպանիոյ մէջ

Ինչպէս հաղորդած էինք, Ալպանիոյ Խորհրդարանը նջջեց կիներու քօղը: Թագաւորին հրահանգներուն համաձայն, կառավարութիւնը մեծ գումար մը նշանակած է եւմտացոյցին մէջ, որպէսզի մասնաւոր դասընթացքներ հաստատուին կիներու համար: Թագաւորին երկու քոյրերը կը վարեն կիներու ազատագրութեան պայքարը: Վերջերս պտոյտ մը կատարեցին Շքոտրայի մօտ, առանց քօղի երեւալով մահմէտական գիւղերու մէջ, որպէսզի երեւելիները եւ իրենց կիները համոզուին թէ անհրաժեշտ է ընկերային բարենորոգումներ կատարել:

## Գերմանական բանակին թիւը 900,000

Լոնտոնի թերթը կը գրեն թէ գերմանական սպայակոյտը մօտերս պիտի վերջացնէ բանակին վերակազմութիւնը: Սովորական 36 զօրաբաժիններուն վրայ պիտի աւելնան բոլոր զրահապատ եւ մեքենաշարժ կազմակերպութիւնները, բաժնուած՝ երեք զօրաբաժիններու: Զրոյց կը շրջի թէ նոր զօրաբանակ մը պիտի հաստատուի Մինիխի մէջ: Այդ պարագային Պավարիա պիտի ունենայ երկու զօրաբանակ: Իրազեկներ կը հաւաստեն թէ նոր կարգադրութեանց հետեւանքով գերմանական բանակը պիտի ունենայ 13 զօրաբանակ, առանց հաշուելու մեքենաշարժ զօրամասերը: Այն ատեն Գերմանիա մշտապէս պիտի ունենայ 900,000 զինուոր, խաղաղութեան ատեն:

### ՃԱՆԱՉՑԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԴԵՐՁԱԿ ԲԱՆՈՒՈՐՆԵՐԸ ժողով ունին վաղը, երկուշաբթի, առտուան ժամը 10ին Աշխատանքի Սակարանին մէջ, իրենց շահերու պաշտպանութեան համար: Սէնթիքան կը հրաւիրէ նաեւ հայ ընկերները:



### ՑՐԻՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶԻ եւ շրջակայից Մարզուանցիներու Հայր. Միութեան ընդհ. ժողովը տեղի կ'ունենայ այսօր, կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, 131 Ֆօպուրկ տիւ Թամփըլ սրճարանին մէջ: Բոլոր հայրենակիցներէ կը խնդրուի ներկայ ըլլալ: Ներկաներու թիւը բաւարար պիտի համարուի տրուելիք որոշումներուն: Օրակարգ. Նոր վարչութեան ընտրութիւն եւ ընթացիկ հարցեր:

ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ Մշակութային Միութիւն մը կազմելու համար, խորհրդակցական ժողով պիտի գումարուի երեքշաբթի գիշեր ժամը 8ին, Շահրիկեան Ակումբին մէջ:

ՀԱՅ Արուեստի Ակումբի վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր անդամները 23 Մարտ, երեքշաբթի 22 rue Richer. Ներկայ կ'ըլլան խորհրդակից անդամներ՝ Պ. Պ. Պարունակեան, Վ. Էսմէրեան, Տքթ. Իգմըրլեան, Ռ. Թադէոսեան, Վաչէ Վաչեանց, Վերնար Վաճէ, Ա. Չօպանեան եւ Պարկիրճեան:

### ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ

Միութեանս յառաջիկայ երեկոյթը տեղի պիտի ունենայ Մարտ 24ին, չորեքշաբթի երեկոյ ժամը 9ին, իր կեդրոնատեղին, 8 rue Bossuet, Paris:

Պիտի զառախօսէ Պ. Ա. ՇԱՀԽԱԹՈՒՆԻ նիւթ ունենալով մեծ արուեստագէտ պետրոս Ադամեանի կեանքն ու իր արուեստը:

Մասնաւորաբար կը խնդրուի ճշդապահ ըլլալ: Դասախօսութենէն վերջ կը սկսի պար:

### ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՄԱՐՍԷՅԼ, Տօշեան.— Որ եւ է հրահանգ չենք ստացած:




Le Gérant: H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme, PARIS (13)

բազմին վախճանը »: Իսկ Հռոմի թերթերը աւելի կը զուսպ խնդիրը, դեսպանին բերանը դնելով հետեւեալ խօսքերը.

— « Իտալացի կամաւորները պիտի չհեռանան սպանիական հողէն, մինչեւ որ Զօր. Ֆրանքոյի զօրքը կատարեալ եւ վերջնական յաղթանակ մը չշահի »:

*** Ժընեւի մէջ կը կարծեն թէ Ա. Դ. Խորհուրդը արտակարգ նիստի պիտի հրաւիրուի մօտերս:

## ՁԱՅՆԱՑԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՊԵԼԺԻՈՅ ԹԱԳԱՒՈՐԸ, որ Լոնտոն գացած էր իր երկրին չէզոքութեան մասին խորհրդակցելու համար, վերադարձաւ գոհ տպաւորութեամբ: Տրուած լուրերուն համաձայն, Անգլիա եւս համոզուած է թէ նախընտրելի է որ Պելժիա չէզոք մնայ, փոխանակ զանազան յանձնառութեանց տակ մտնելու:

ՄՈՍԿՈՒԱՅԷՆ կը հեռագրեն թէ երեք Թրոցքիականներ մահուան դատապարտուեցան, իբրեւ խափանարար: Ծանր ճարտարարուեստի նոր գործավարը ճառ մը խօսելով, յայտարարեց թէ դեռ կը շարունակուին խափանարար գաւերը քիմիական եւ մետաղագործական հաստատութեանց մէջ:

ԿԱԶԻ, ՋՈՒՐԻ, ելեկտրականութեան եւ հանրակառքի եւն. գիները բարձրացնելու համար արտակարգ ժողով մը պիտի գումարէ քաղաքապետական խորհուրդը, նկատելով որ 400 միլիոն փրանքի բաց մը կը նախատեսուի, իբրեւ հետեւանք ընկերային օրէնքներու գործադրութեան:

ՀԻՆԳ ՀՈԳԻ ՄԵՌԱՆ Պոժոլէի լեռներուն մէջ, անգլիական օդանաւի մը մէջ, որ Աղեքսանդրիայէն Լոնտոն կը դառնար եւ փոթորիկի բռնուելով ջախջախուեցաւ:

ՓԱՐԻԶԻ ՈՍՏԻԿԱՆՈՒԹԻՒՆԸ անցի օր նոր աւլումը մը կատարեց, կոխելով աւելի քան 50 սրճարաններ եւ ակումբներ եւ հարցաքննելով 700 հոգի: Այս առթիւ ձերբակալուեցան 49 կասկածելիներ, որոնցմէ 11ը վար դրուեցան, իսկ ութ օտարականներ պիտի արտաքսուին:

---

Տէր եւ Տիկին Միսաք Ճգնաւորեան եւ աղջիկները՝ Զուարթ եւ Արշալոյս եւ պարագաները սրտի խորունկ կսկիծով կը ծանուցանեն իրենց սիրելի որդւոյն, եղբօր եւ ազգականին՝

## ԿԱՐԱՊԵՏ ՃԳՆԱՒՈՐԵԱՆԻ

դառնակսկիծ մահը որ տեղի ունեցաւ մարտ 6ին, երիտասարդ հասակին մէջ:

Ցուղարկաւորութիւնը տեղի կ'ունենայ 27 մարտ, շաբաթ կէսօրէ վերջ, ժամը 3.30ին, իրենց բնակարանին մէջ, 145, Rue de Belleville, Փարիզ (19), ուրկէ հանգուցեալին մարմինը պիտի փոխադրուի Փանթէն - Փարիզիէն գերեզմանատունը:

ԾԱՆ. — Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել:

---

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Շավիլի եւ շրջականներու եկեղեցական վարչութիւնը ի գիտութիւն բարեպաշտներու կը ծանուցանէ թէ յառաջիկայ Ս. Զատկի Յարութեան տօնին առթիւ, բստ յետագայ յայտագրի եկեղեցական արարողութիւն տեղի պիտի ունենայ Շավիլի Ս. Գրիգոր Լուսաւորիչ մատրան մէջ: Տեղւոյն հոգեւոր հովիւ գեր. Տ. Հմայեակ վրդ. Պաղտասարեան իր հոգեշունչ քարոզներով պիտի մխիթարէ հաւատացեալ ժողովուրդը:

Յայտագիր եկեղ. արարողութեանց

Աւագ ուրբաթ.— խաչելութիւն եւ Թափոր Թաղման ժ. 18:

Աւագ շաբաթ.— ճրագալոյց ժ. 15:

Զատիկ Ս. Յարութեան.— Սկիզբ ժ. 8 պատարագ ժ. 10.50:

Մեռելոցի օր.— Սկիզբ ժ. 8. Ս. պատարագ 10.30:




Le Gérant: H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN)

17, Rue Damesme, PARIS (13)


## Հ. Յ. Դ.

*Փարիզ*

ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՈՅԻ Զաւարեան կոմիտէի ընդհ. ժողովը, ուրբաթ, 26 մարտ, երեկոյեան ժամը 9ին, Ակումբին մէջ:

---

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ ԶԱՏԿԻ ԱՌԹԻՒ

Վալանսի Հ. Յ. Դ. կոմիտէի կողմէ

23 Մարտ, կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին, Հ.Յ.Դ.Սիամանթօ Ակումբին մէջ

կը հրաւիրուին ընկերներն ու համակիրները:

---

## ՄԵԾ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

*կազմակերպուած Մարսիլահայ Երգչախումբին կողմէ,*

*Բարձր հովանաւորութեամբ Երեսփ. Ժողովի Նախագահ*

**ԷՏՈՒԱՐ ԷՐԻՕԻ**

*Զատկի երկուշաբթի օրը, 29 Մարտ, ժամը 21ին,*

*ՍԱԼՈՆ ՄԱՍԻԼԻԱՅԻ ՄԷՋ.* 1 **Rue Roux de Brignoles**, *Մարսէյլ*

**ՐԱՖՖԻ ՊԵՏՐՈՍԵԱՆ** (11 ՏԱՐԵԿԱՆ)

*կը դաշնակահարէ Պախէն, Սկարլաթիէն, Շոբէնէն, Ֆօրէէն, Տէպիւսիէն, Սկրիապինէն, Լիցէն եւ Կլինքա—Պալաքիրէֆէն կտորներ:*

տեղերու գիները.— *15, 10* եւ *8* ֆրանք:

---

## Ֆութպոլի մեծ մրցում

Կիրակի 28 մարտ, կէսօրէ վերջ ժամը 2ին, Հ. Մ. Ը. Մ.ի Պոմոնի սեփական դաշտին վրայ:

Լիոնի Հ. Մ. Ը. Մ.ի Ա. խումբը ընդդէմ Մարսէյլի Հ. Մ. Ը. Մ.ի Ա. խումբին եւ ուրիշ կարեւոր մրցումներ:

Նոյն օրը, մարտ 28, երեկոյեան ժամը 9էն մինչեւ լոյս ԽՆՋՈՅՔ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍ, ի պատիւ Լիոնի մեր մարզիկներուն, Սալոն Գոլիզէի մէջ, Մարսէյլ:

*Հովանաւորութեամբ Պ. ՏԻՐԱՆ ԹԷՔԷԵԱՆԻ*

*Գեղարուեստական նուագախումբ:* Harlem Jazz de Mathieu.

Մուտք 10 եւ 8 ֆրանք

---

## Արեւելեան նուագի սիրահարներուն

28 Մարտ, կիրակիէն սկսեալ, Պ. ԶԱՏԻԿ ՄԻՐԶԱԵԱՆԻ սրճարանին մէջ, 45, Rue de la Défense, Իսի լէ Մուլինօ, կը նուագեն՝ ՔԷՄԱՆԻ ՍԱՐԳԻՍ եւ ՈՒՏԻ ՅԱԿՈԲ:

Արեւելեան պարուհի: Անխարդախ օղի՝ առաջնակարգ աղանդերներով:

---

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

**ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ՍԱՓՐԻՉՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ**

28 Մարտ, Զատկի կիրակի իրիկունը ժամը 9էն մինչեւ լոյս,

**84 Rue de Grenelle,** *Մեթրօ* **Rue du Bac**

*Գեղարուեստական բաժնին կը մասնակցին հայ եւ օտար արուեստագէտներ, ՕՐ. ՆԻԶԱՄԵԱՆ (երգ), 8 տարեկան դաշնակահարուհի ԱՆԺԷԼ—ԱԼԻՍ: A. LEVALIER իր exhebitionներով, Պ. ԳՐԻԳՈՐ իր ծիծաղաշարժ երգերով եւ խաղերով, հանրածանօթ պարուհի HUGUETTE O'BIA: Կանանց մազերու վերջին նորաձեւութիւններու ցուցադրութիւն հայ եւ օտար արհեստակիցներու կողմէ:*

*Օրուան թագուհիի ընտրութիւն.*

*Ընտիր ճաշ եւ օրքէսթր 14 հոգի, ղեկավարութեամբ Պ. Տ, ՕՆՈՍԵԱՆԻ*

ԱՐԵՒԵԼԵԱՆ ՆՈՒԱԳ

ԳԹՈՒՅԵՈՆ, ՎԻՃԱԿԱՀԱՆՈՒԹԻՒՆ եւ ԱՆԱԿՆԿԱԼՆԵՐ:

*Ձրի բաշխում անուշահոտութիւններու*

*Ղեկավարութեամբ քանունի Պ. ՅԱԿՈԲԻ պիտի նուագեն ուտի ԲԱՐՈՒՆԱԿ եւ քէմէնչէ ՕՀԱՆԷՍ: Կը մասնակցի պարուհի մը:*

Մուտք՝ *8* ֆր. կիներու *6* ֆր.:





եւ ամէն տեսակ զէնքերու առաքումը դէպի Սպանիա, Վոսփորի ճամբով։ Կ'ըսուի թէ Ֆրանսայի դէմ ալ ամբաստանութիւններ պիտի ըլլան։

## 60,000 հոգի ջարդուած Մատրիտի մէջ?

Սպանիոյ ապստամբ իշխանութեան կողմէ հրատարակուած տեղեկագրի մը համաձայն, քաղաքացիական պատերազմէն ի վեր, միայն Մատրիտի մէջ կոտորուած են 60000միապետականներ, ազնուականներ եւ ազգայնականներու համակիրներ։ Տեղեկագիրը կ'ըսէ թէ զոհերէն 35,000ին լուսանկարները դասաւորուած են Մատրիտի գաղտնի ոստիկանութեան դիւանատան մէջ։ Նոյն աղբիւրին համաձայն, ուրիշ 20,000 ազգայնականներ ալ սպաննուած են Վալենցիայի եւ Պարսելոնայի բանտերուն եւ փողոցներուն մէջ։

*** Կռիւները կը շարունակուին Մատրիտի շրջանին մէջ, թէեւ ոչ նոյն ուժգնութեամբ։ Կ'ըսուի թէ Իտալացիներուն տեղ Մարոքցի զինուորներ դրուած են նոյն ճակատին վրայ։

*** «Իզվեստիա», Մոսկուայի կառավարական պաշտօնաթերթը, խմբագրականով մը կը ջանայ ապացուցանել թէ խորհրդային իշխանութիւնը երբեք միտքէն չէ անցուցած պոլշեւիկացնել Սպանիան, այլ կ'ուզէ որ ժողովրդավար հանրապետութիւն մը հաստատուի այդ երկրին մէջ։

## 1200 կառքեր ռմբահարուած Մանչուրիայի մէջ

«Տէյլի Թէլէկրաֆ»ի թղթակիցը, որ վերջերս պտոյտ մը կատարած էր Մանչուրիոյ մէջ, կը հեռագրէ թէ Փէքինէն.— Մեծապէս փոխուած է խորհրդային իշխանութեան տրամադրութիւնը։ Անցեալ տարի Ռուսերը բացէ ի բաց կը խուսափէին զինուորական չփումէ՝ Ճափոնցիներու հետ, որոնք յարձակողական էին այն ատեն։ Այժմ փոխուած է կացութիւնը։ Ռուսերը յարձակողական դարձած են, Ճափոնցիները զգոյշ։ Ճափոնի զինուորական իշխանութիւնները այս փոփոխութիւնը կը վերագրեն Ծայր․Արեւելքի խորհրդային ուժերու զօրացման։ Ճափոնական գործակալներ կը հաւաստեն թէ առնուազն 300,000 ռուս զինուորներ եւ 1200 սաւառնակներ կը գտնուին Վլատիվոսթոքի մօտ։ Վլատիվոսթոք-Խապարովսք կրկնակ երկաթուղին, որ Մանչուրիոյ սահմանէն կ'անցնի 500 մղոն երկայնութեամբ, գրեթէ ամբողջովին կը գործածուի զինանիւթերու փոխադրութեան։ Իբր 70 սուզանաւեր կը գտնուին Վլատիվոսթոքի շրջանին մէջ։ 1936ին 47 Ճափոնցիներ կային Վլատիվոսթոքի մէջ. այժմ մնացած են միայն 9 հոգի, միւսները արտաքսուած կամ բանտարկուած ըլլալով։

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՏՕՐԻՕ, Սէն-Տընիի քաղաքապետը, պաշտօնանկ եղած է կամ պիտի ըլլայ, դրած էին թերթերը, քննութիւն բացուած ըլլալով իր գործառնութեանց մասին։ Ներքին նախարար հերքեց այս լուրը, յայտարարելով թէ քննութիւն բացուած է ինչպէս բոլոր քաղաքապետութեանց, նոյնպէս Սէն Տընիի մէջ, եւ տեղեկագիրը ղրկուած է իրեն։ Իսկ Տօրիօ կ'ազդարարէ թէ ի զուր կը փորձեն փակել իր բերանը։ «Եթէ պաշտօնանկ ընեն զիս, այն ատեն ամբողջովին պիտի նուիրուիմ իմ հիմնած կուսակցութեանս, եւ դեռ շատ պիտի խօսին իմ վրայ»։

ՓԱՐԻԶԻ ՈՍՏԻԿԱՆՈՒԹԵԱՆ վերակազմութեան համար, երկու յանձնաժողովներ կազմուեցան, որոնց մէկը պիտի ուսումնասիրէ քաղաքապետական ոստիկանութեան բարեկարգումի խնդիրը, իսկ միւսը՝ անոր սպառազինումը։ Այս առթիւ պիտի աւելցնեն ոստիճանաւորներու թիւը։ Այժմ միայն 29 տեսուչներ (քոմիսէր) կան 15,000 ոստիկաններու համար, ինչ որ անբաւական է։ Քլիշիի դէպքը հաստատեց թէ պատասխանատու վարիչներ չկային ոստիկաններուն գլուխը։

ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ արտօնեց որ Մոսկուայի գլխաւոր փուռերէն երբեք անխմոր հաց ծախեն, Պասեքի տօնին առթիւ։

ԽՈՐՀՐԴԱՐԱՆԸ արձակուրդ ստացաւ մինչեւ ապրիլ 27։ Երեսփ. Ժողովի վերջին նիստին մէջ 275ի դէմ 313 ձայնով քուէարկուեցաւ կառավարութեան առաջարկած օրինագիծը՝ պանդոկներու եւ ճաշարաններու գիներու մասին։ Խառն յանձնախումբեր պիտի կազմուին 20,000է աւելի բնակիչ ունեցող քաղաքներու մէջ, հսկողութիւն կատարելու համար գիներու վրայ։ Առաւելագոյն յաւելումը պիտի ըլլայ 2 առ հարիւր՝ 1936ի վրայ, եւ թէթեւ բարդում մըն ալ՝ նկատի առնելով ապրուստի սղութիւնը։



### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Սերոբեան գերդաստանը կը ծանուցանէ թէ՝ ըստ Ատափազարի սովորութեան, այս երկուշաբթի օր, մարտ 29ին, Փանթէնի գերեզմանատան մէջ, ժամը 15ին, տեղի կ'ունենայ հոգեհանգիստի այցը, իրենց անմոռանալի ԲԱՐՍԵՂ ՍԵՐՈԲԵԱՆԻ դառնաղէտ մահուան քառասունքին առթիւ, իր գերեզմանին վրայ։

Կը հրաւիրուին բարեկամներն ու ազգականները։

ԾԱՆՕԹ.— 1.— Փոխադրական միջոցներ, Մէթրօ Փօրթ տը լա Վիլէթէն օթօպիւս առնել, սակայն նախընտրելի է, Փլաս տը լա Րէփիւպլիքէն առնել թիւ 51 օթօպիւսը։

Ժամադրավայր՝ գերեզմանատան եռեւի դրան մօտ, Րիւ տը Փանթէնի վրայ, կամ գերեզմանատան մէջ, 145e Division, 1e ligne, 51 tombe։

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Սէն Թ'էթիէնի Քղիի Հայր. Միութիւնը իր խորին շնորհակալութիւնը կը յայտնէ դերակատարներ Տէր եւ Տիկին Պ. Յարութիւն Յովսէփեանի, Պ. Յակոբ Մանուկեանի, Պ. Արամ Տէմիրճեանի, Պ. Ստեփան Ստեփանեանի, ջութակահար Պ. Բարսեղ Ներսէսեանի եւ յուշարար Պ. Վարդան Խրիմեանի, որոնք իրենց սիրայօժար մասնակցութիւնը բերին միութեանս մարտ 14ին կերկայացուցած «Ուշ լինի նաւ լինի» օփերեթին։



### ԱՆԴՐԱՆԻԿ ՊԱՏԱՐԱԳ

Նորընծայ Ազգէ քահանայ (Աւետիս Փայլակ) իր անդրանիկ պատարագը պիտի մատուցանէ Փարիզի եկեղեցին, այսօր, շաբաթ, Զատկի Ճրագալոյցի առթիւ։

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Շավիլի եւ շրջականերու եկեղեցական վարչութիւնը ի գիտութիւն բարեպաշտներու կը ծանուցանէ թէ յառաջիկայ Ս. Զատկի Յարութեան տօնին առթիւ ըստ ժէտագայ յայտագրի եկեղեցական արարողութիւն տեղի պիտի ունենայ Շավիլի Ս. Գրիգոր Լուսաւորիչ մատրան մէջ։ Տեղւոյն հոգեւոր հովիւ գեր. Տ. Հմայեակ Վ.րդ. Պաղտասարեան իր հոգեշունչ քարոզներով պիտի մխիթարէ հաւատացեալ ժողովուրդը։

Յայտագիր եկեղց. արարողութեանց

Աւագ շաբաթ.— Ճրագալոյց ժ. 15։

Զատիկ Ս. Յարութեան.— Սկիզբ ժ. 8 պատարագ ժ. 10.50։

Մեռելոցի օր.— Սկիզբ ժ. 8, Ս. պատարագ 10.30։




Le Gérant: H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Dameame, PARIS (13)

